# ԱԼԵՔՍԱՆԴՐ ՍՊԵՆԴԻԱՐԵԱՆ

## ԳՈՒՇԱԿՈՒՀԻՆ

քառաձեռն դաշնակի համար

Գահիրէ

2000

# ALEXANDER SPENDIARIAN

## THE DIVINER
for piano four hands

Edited and annotated
by
HAIG AVAKIAN

Cairo
2000

# ԱԼԵՔՍԱՆԴՐ ՍՊԵՆԴԻԱՐԵԱՆ

## ԳՈՒՇԱԿՈՒՀԻՆ

քառաձեռն դաշնակի համար

Խմբագրութիւն եւ ներածութիւն՝
**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Գահիրէ

2000

# ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կու գանք խորին շնորհակալութիւնները յայտնելու Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան Գահիրէի մասնաճիւղի վարչութեան եւ իր յարգելի ատենապետ տիար Պերճ Թէրզեանին, որոնք յօժարութեամբ ընդունեցին եւ ամէն դիւրութիւն ընծայեցին տպագրելու այս աշխատութիւնը:

Շնորհակալութիւն՝ Երեւանի «Չարենց» Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի տնօրէնութեան եւ երաժշտական բաժինի գիտաշխատողներուն, որոնք տրամադրեցին մեզի Ալեքսանդր Սպենդիարեանի ձեռագիրը:

Շնորհակալութիւն՝ բանասէր Տիգրան Գէորգեանին, լեզուական եւ խմբագրական դիտողութիւններուն համար:

Շնորհակալութիւն՝ տիար Մարտիրոս Պալեանին, հրատարակչական վերահսկողութեան համար:

Հ. Ա.

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Հայ մեծագոյն երաժշտահաններէն մէկն է Ալեքսանդր Սպենդիարեան (Տաւրիկեան նահանգի Կախովկա աւան, 1871–Երեւան, 1928), որ ստեղծեց հայկական յօրինողական ինքնուրոյն դպրոց մը, խոր ազդեցութիւն թողելով յետագայ սերունդներուն վրայ:

Նուագախմբային եւ երգային բնագաւառները կազմելով իր ստեղծագործական աւանդին հիմնական առաղցը, ան սակաւաթիւ ստեղծագործութիւններ յօրինած է մենանուագ կամ սենեկային նուագարանային կազմերու համար՝ ընդ որում, անոնց մեծամասնութիւնը ի՛ր իսկ յօրինած նուագախումբի երկերուն փոխադրութիւններն են: Այս առումով իրաւացի է Ալեքսանդր Շահվերդեան երբ կը գրէ՝ թէ «կոմպոզիտորը առաւելապէս յակուած էր դէպի նուագախմբային մտածողութիւնը: Այդ են հաստատում ոչ միայն նուագախմբային ստեղծագործութիւնները, այլեւ երգերն ու օպերան, որտեղ զարգացման տարրը եւ սիմֆոնիկ ընդհանրացումները շատ ուժեղ են, իսկ երբեմն նոյնիսկ աւելի են արտայայտուած, քան նուագախմբային մանրանուագներում» (Ա. Շահվերդեան, *Ալեքսանդր Սպենդիարեան*, Երեւան, 1971, էջ 37):

Երկձեռն եւ քառաձեռն դաշնակի ինքնուրոյն հեղինակութիւններուն մեծամասնութիւնը ուսանողական շրջանի յղացումներ են: Բացի մէկ ինքնուրոյն երկէ մը եւ քանի մը փոխադրութենէ՝ Սպենդիարեան իր ստեղծագործական ուղիի հասուն շրջանին երբեք չէ դիմած սոյն նուագարանին: Այսպէս, երկձեռն դաշնակի երկերն են՝ երկու *Վալս* (1892 եւ 1893), *Սկերցօ* (1894), *Մենուէտ* (1895), *Բարկարոլլա* (1895), *Ղայթարմա* (1895), *Մենուէտ* (1897), *Երգ, պար եւ Ղայթարմա* (1917, հասուն շրջանի միակ դաշնակի ստեղծագործութիւնը) եւ մէկ փոխադրութիւն մը՝ *Խիզախ մարտիկներ* (1915) (տե՛ս Ա. Սպենդիարով, «Գործիքային ստեղծագործութիւններ», *Երկերի լիակատար ժողովածու*, երրորդ հատոր, խմբագրութիւն Գ. Բուդաղեանի, Երեւան, 1951): Քառաձեռն մէկ դաշնակի հեղինակութիւններն են՝ *Պոլոնէզ* (1894), *Սգոյ քայլերգ* (1894), ինչպէս նաեւ փոխադրութիւններ՝ *Հինաւուրց պար* (1896), *Ղրիմի էսքիզներ* (առաջին շարք՝ 1903, երկրորդ շարք՝ 1912), *Համերգային վալս* (1907), *Պարային* (1915), *Խիզախ մարտիկներ* (1915), *Ալմաստ* օփերայէն չորս հատուած՝ «Քայլերգ», «Թաթուլի վերադարձը», «Աղջիկների պարը», «Տղամարդկանց պարը»: Ի վերջոյ, քառաձեռն երկու դաշնակի համար փոխադրած է *Սգոյ պրելիւդ* (1911) (տե՛ս Ա. Սպենդիարով, «Սիմֆոնիկ ստեղծագործութիւններ, քառաձեռք փոխադրումներ դաշնամուրի համար», *Երկերի լիակատար ժողովածու*, իններորդ հատոր, խմբագրութիւն Գ. Բուդաղեանի, Երեւան, 1950):

Սպենդիարեանի ձեռագիրներուն մէջ կը գտնուի անտիպ ստեղծագործութիւն մը՝ *Գուշակուհի* խորագիրով, որ առաջին անգամ ըլլալով լոյս կը տեսնէ այս հրատարակութեան մէջ: Երաժշտահանին նուիրուած մենագրութիւններուն մէջ, երաժշտագէտներ Քնարիկ Գրիգորեան եւ Գէորգի Տիգրանեան բաւարարուած են այս ստեղծագործութեան խորագիրը նշելով՝ առանց ոչ մէկ յաւելեալ բացատրութեան ու մեկնաբանութեան (տե՛ս Քնարիկ Գրիգորեան, *Ալեքսանդր Սպենդիարով, կեանքը եւ ստեղծագործութիւնը*, Երեւան, 1952, էջ 133: Գէորգի Տիգրանով, *Ալեքսանդր Աֆանասիեվիչ Սպենդիարով* (ռուսերէն), Մոսկուա, 1959):

*Գուշակուհին* ունի բարդ երկմասանի կառուցուածք: Մասերը իրար կը յաջորդեն հակադրային՝ արագ-դանդաղ, սկզբունքով: Առաջին մասը՝ սոլ փոքրալար (mineur) (հատածներ 1–55) յագեցած է աշխոյժ ու սլացիկ թափով: Ներդաշնակային (harmonique) լեզուն թարմ է ու կենսունակ, ուր յաճախակի կրկնուող կրկնակի տոմինանթը եւ անոր ցած հինգերորդ աստիճանով տարբերակը (հատածներ 2, 6, 18, 22, 34, 38) միշտ նոր լիցքաւորումով կը պարուրեն երաժշտութիւնը: Ձայնակայքային (tonalité) առումով աչքի կը զարնէ հիմնանիւթին (thème) կրկնութիւնը զուգահեռ մեծալարին (majeur) մէջ (հատածներ 17–էն սկսեալ) եւ այս առիթով առաջացած համաձայնոյթի (mode) փոփոխութիւնը՝ *սի պեմոլ, տօ տիէզ, ռէ, մի, ֆա* (հատածներ 21–24), այսինքն՝ երկրորդ բարձր աստիճանով իւրայատուկ

հնգալարի երեւումը: Երկրորդ մասը՝ տօ փոքրալար (հատածներ 56-113), յատկանշական է իր խոհուն ու խորհրդաւոր ընթացքով, խոր մեղեդային բովանդակութեամբ եւ յարաճուն զարգացումով: Հատածներ 84-91-ին մէջ երաժշտական խորազդեցիկ բարձրակէտ մը գծագրուած է՝ տռամաթիք շունչ մը հաղորդելով ստեղծագործութեան:

Մեր կարծիքով, *Գուշակուհի*ն հետաքրքրական ներդրում մըն է հայկական քառաձեռն դաշնակի գրականութեան մէջ եւ արժանի է վայելելու դաշնակահարներու ուշադրութիւնը:

# ՁԵՌԱԳԻՐԸ

Կը գտնուի Երեւանի «Չարենց» Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Ա. Սպենդիարեանի դիւանի թիւ 2851 թղթածրարին մէջ, կազմուած է 6 ինքնագիր, մատիտագիր թերթերէ, անթուակիր է եւ ռուսերէն լեզուով խորագրուած է *Գուշակուհի*:

Այս տպագրութեան մէջ հարկ եղաւ կատարել հետեւեալ խմբագրութիւնները.

**Հատածներ 7-16, 19-25, 27, 29-41, 43-51, 57-58, 79-80, 82-83.**

Primo-ին ձախ ձեռքը գրուած չէ: Սակայն հիւսուածքային կառուցուածքէն դժուար չէ ենթադրել՝ որ ձախ ձեռքը նուագուելու է կամ նախորդող համապատասխան հատածներու նմանողութեամբ, կամ կրկնելու է աջ ձեռքը մէկ ութեակ ցած:

**Հատածներ 97-113.**

Ձեռագիրին մէջ, Primo-ին վերջին էջը (հատած 97-էն սկսեալ) կը պակսի, մինչ Secondo-ն կը շարունակուի մինչեւ վերջ: Primo-ն վերականգնեցինք նախորդ հատւածներու նմանողութեամբ:

**Հատած 113.**

Secondo-ն կը վերջանայ պարզ հատածագիծով՝ առանց վերջագիծի, հետեւաբար յստակ չէ՝ թէ արդեօք ստեղծագործութեան աւարտն այստեղ է, թէ կը գտնուի նաեւ շարունակութիւն մը՝ զոր կորսուած է կամ պարզապէս մնացած անմշակ վիճակի մէջ:

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ


| | Էջ |
|---|---|
| Շնորհակալիք | I |
| Ներածութիւն | III |
| ԲՆԱԳԻՐ | 1 |
| ԳՈՒՇԱԿՈՒՀԻՆ | 2 |

Գահիրէի Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան «Սաթենիկ Ճ. Չագըր հիմնադրամ»-ը՝ Հայկ Աւագեանի խմբագրութեամբ եւ ծանօթագրութեամբ լոյս ընծայած է հետեւեալ երաժշտական հատորները.

1.-**Տիգրան Չուհաճեան,** *Սուրբ, սուրբ,* քառերգի եւ սենեկային նուագախումբի համար եւ *Հայր մեր,* սոփրանոյի, ալթոյի, իգական երգչախումբի եւ սենեկային նուագախումբի համար, Գահիրէ, 1999 (74 էջ)

2.-**Տիգրան Չուհաճեան,** *Արշակ Բ.*, օփերա չորս արարով, իտալերէն լիպրեթթոյով, Գահիրէ, 2000

ա.-Դաշնակի եւ երգի համար (vocal score) (440 էջ)
բ.-Նուագագրութիւն (orchestral score) (804 էջ)
գ.-Առանձին նուագարաններ՝ կազմուած 24 հատորէ (1549 էջ)

3.-**Տիգրան Չուհաճեան,** *Աւէ Մարիա,* տարբերակներ, Գահիրէ, 2000 (82 էջ)

4.-**Տիգրան Չուհաճեան,** *Կաւոթ,* ջութակի, թաւ ջութակի, դաշնակի եւ հարմոնիումի համար եւ *Զորս փիւկ,* լարային եռանուագի եւ քառանուագի համար, Գահիրէ, 2000 (52 էջ)

5.-**Քրիստափոր Կարա-Մուրզա,** *Դաշնակի ստեղծագործութիւններ,* Գահիրէ, 2000 (34 էջ)

6.-**Մակար Եկմալեան,** *Դաշնակի ստեղծագործութիւններ,* Գահիրէ, 2000 (54 էջ)

7.-**Արքատի Քուկէլ,** *Էջեր ալպոմէն* եւ *Հայկական պար,* դաշնակի համար, Գահիրէ, 2000 (18 էջ)

# ألكسندر سبنتياريان

## العرّافة

### للبيانو أربعة أياد

التحرير الموسيقي والتعليقات
هايج أفاكيان

القاهرة
٢٠٠٠